Պաշտօնական ղեկոյց մը կ'ըսէ թէ վարչապետը հրաւիրեց Պ. Մոնէը առժամապէս ձգել իր պաշտօնը։ Ազգ. պաշտպանութեան կոմիտէին ընդհ. քարտուղարը ծնած է 1906ին։ Յաջորդաբար եղած է ուսուցիչ, տուրքերու գլխաւոր վերատեսուչ, իսկ ազատագրութենէն ետք՝ ընդհ. քարտուղար Սէնի նահանգապետութեան։

× Վերջին լուրերու համաձայն, փախստական Գառանէժի հետքը գտնուած է Սօն է Լուար մէջ եւ ձերբակալութեան կը սպասուի այսօր – վաղը։ Իր եղբայրն ալ հարցաքննուեցաւ։ Նոր յայտնութեանց կը սպասուի։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹՐԻԷՍԹԷի մասին համաձայնութիւն գոյացած ըլլալով, իտալական զինուորները կը պատրաստուին գրաւելու իրենց սահմանուած շրջանը։ Հաւանական է որ համաձայնութեան բոլոր մանրամասնութիւնները հաղորդուին մինչեւ ուրբաթ, երբ կը լրանայ անգլեւամերիկեան յայտարարութեան առաջին տարին։

Ի. ՄԻՈՒԹԵԱՆ Կեդր. Կոմիտէին ընդհ. քարտուղարը, Պ. Խրուշչեւ, Փեքին հասաւ բազմանդամ պատուիրակութեամբ մը, շնորհաւորելու համար Նոր Չինաստանի հնգամեակը։ Այս առթիւ մեծ զօրահանդէս մը սարքուեցաւ։ Պ. Խրուշչեւ ճառ մը խօսելով, ըսաւ թէ Ի. Միութիւնը համաձայն է որ Չինաստան ազատագրէ Ֆորմոզան։ «Ի. Միութիւնը կատարելապէս կ'ըմբռնէ Չինաստանի ժողովրդական հանրապետութեան եւ 600 միլիոն Չինացիներու կամքը՝ ազատագրելու Ֆորմոզան»։ Այս առթիւ ձաղկեց հարաւ–արեւելեան Ասիոյ մասին կնքուած դաշնակցութիւնը եւ քննադատեց Մ. Նահանգները որոնք չեն ուզեր որ Նոր Չինաստանը մտնէ Ազգաժողովին մէջ, մասնակցելու համար միջազգային հարցերու լուծման։

ԱԶԳԱԺՈՂՈՎԻՆ ուրբաթ օրուան նիստին մէջ, Պ. Վիշինսկի առաջարկեց առանձին քննել իր զինաթափութեան ծրագիրը։ Այս առթիւ յուշագիր մը ներկայացուց ժողովին։ Ամերիկեան թերթերը քննութեան արժանի համարելով հանդերձ այդ ծրագիրը, գիտել կու տան թէ «ուրիշ բան է Սովետներուն խօսքը, ուրիշ՝ բան գործը»։

ԵՐԿՈՒ ԳԵՐՄԱՆ ՍՊԱՆԵՐՈՒ դատավարութիւնը կը շարունակուի։ Ուրբաթ օրուան նիստին մէջ, Վիշիի ոստիկանութեան վերատեսուչը, Պուսքէ պատմեց թէ Մարսէյլի հին նաւահանգիստին քանդումը որոշուած ատեն, նախ 60.000 բնակիչներ պիտի աքսորուէին, յետոյ թիւը մեղմացաւ եւ մօտ հազար հոգի աքսորուեցան։ Ամբաստանեալ Օպերկ այս առթիւ գովեց Պուսքէն իբրեւ «Ֆրանսացի հայրենասէր»։

### ՏԵՐՈՒՆԻ

ՄԱՐՍԷՅԼ.— Մեծ բազմութիւն մը ներկայ էր արկածահար Յակոբ Յովակիմեանի յուղարկաւորութեան, որ տեղի ունեցաւ Սեպտ. 29ին, Սէն Լուի մէջ։ Կը մասնակցէին նաեւ իր աշխատած հաստատութեան վարիչները և Ֆրանսացի ընկերներ, գեղեցիկ ծաղկեպսակով մը. Իւրայն հաղորդակցութիւնը եւ Թաղեցիներն ալ առանձին ծաղկեպսակներ ղրկած էին։

Այս առթիւ, եկեղեցիին մէջ եղան դրամական նուէրներ ողբացեալին ազգականներուն կողմէ, (Պ. Պ. Մանուկեան, Գէորգ Յովակիմեան, Մ. Յովակիմեան, Գրի. Գարաօղլանեան), Սէն Լուի եկեղեցիին երեք հազար ֆրանք, Կապոյտ Խաչի եւ Նոր Սերունդին հազարական, իսկ ողբացեալի ընտանիքին կողմէ «Յառաջ»ի բարգաւաճման համար հազար ֆրանք։

Մխիթարութիւն իր ընտանիքին եւ պարագաներուն։— Կապօ



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կը տօնուի մեծ պատրաստութեամբ։

Շաբօ տէ Ֆլէօռի հանրածանօթ սրահներուն մէջ։

30 Հոկտեմբեր, Շաբաթ ժամը 9էն մինչեւ լոյս։ Կէս գիշերէն վերջ եւրոպական պարեր մեծ սրահին մէջ։ Աւանդական խնջոյք պզտիկ սրահին մէջ։

Մանրամասնութիւնները յաջորդով։

★

ԿՐԸՆՕՊԼԻ ՄԷՋ

Կը տօնուի Նոյեմբեր 7ին, Կիրակի կէսօրէն վերջ ժամը 15ին, Թիւ Ժէ, Սէն Լուի սրահը։

## ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻ

Յառաջիկայ Հոկտ. 10ի կիրակի օրը կէսօրէ ետք ժամը 1.30ին, ընկերական ճաշով մը, Ազգ. Տան մէջ։

Գեղարուեստական ճոխ բաժին։

Անոնք որ կը փափաքին մասնակցիլ ճաշին, այժմէն դիմեն՝ Պ. ՀԱՅԿ ԱՂԱՐԵԿԵԱՆԻ, հեռաձայն ՓՐՕ. 07-25 եւ Պ. Ադամեանի, ԹՐԻ. 57-74։ Անձ գլուխ 550 ֆրանք։

Այրի Տիկին Արշալոյս Սարգիսեան, Պ. Յովհաննէս Թերլէմէզեան, Օր. Արփինէ Սարգիսեան, Պ. Բարթամ Գասմաճեան եւ զաւակները՝ Եդուարդ եւ Իրիս, Տիկ. Սիրուն Լերթողեան, Տիկին Արաքսի Տիւփիւի, Տէր եւ Տիկին Ժիրայր Թէրլէմէզեան, Տէր եւ Տիկին Տոքթ. Արթօ Արզարեան, ինչպէս եւ Զրբաշեան, Աճէմեան Թահմիզեան (Ամերիկա) ընտանիքները խորունկ վշտով կը ծանուցանեն իրենց սիրելի ամուսնոյն, փեսային, եղբօր, աներձագին, մօրեղբօր, քեռայրին եւ ազգականին՝

ՀՐԱՉ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ

յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ Սեպտեմբեր 25ին, Մոնթէ Քաթինիի մէջ (Իտալիա), 64 տարեկան հասակին։

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այս երեքշաբթի Փարիզի Հայոց եկեղեցին (15 Ռիւ Ժան Կուժօն) ժամը 2.15ին ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փէռ Լաշէզի գերեզմանատունը։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այն նկատել։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Եկեղեցաշէն Տիկնանց Յանձնախումբը շնորհակալութեամբ ստացած է ի նպաստ եկեղեցւոյ շինութեան, Պ. Յակոբ Խաչերեանէ 2500 ֆր., իր զաւկին Յովսէփ Խաչերեանի ամուսնութեան առթիւ, որուն մէջ հրաւիրեալներէ հաւաքուած։

Կը յուսանք որ այս բարի օրինակին պիտի հետեւին ուրիշներ։

× Նոյնպէս Ազգ. Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է ի նպաստ եկեղեցւոյ շինութեան տասը տոլար, Տէր եւ Տիկին Կարապետ Շամշոյեաններէ (Ամերիկա)։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Սեբաստիայէն Տոքթ. Յարութիւն Գալֆաքճեան կը փնտռէ իր նախկին դասընկերը՝ Կարապետ Քիւփէլեան, ճարտարագէտ (Էնժէնիէօռ)։ Պատերազմէն առաջ կը գտնուէր Պոլիս։ Ինք Մարաշցի հայրը գերմանացի եղած է, ունի բժիշկ եղբայր մը՝ Սիմոն եւ փաստաբան եղբայր մը՝ Տիգրան։ Կը կարծուի թէ Սուրիա կը գտնուի. Տեղեկացնել Պ. Լութֆիկ Քաչիքճեանի, 125 Ավընիւ Հանրի Պարպիւս, Քլամառ. (Սէն), Ֆրանս։

Միջին Արեւելքի թերթերէն կը խնդրուի արտատպել։









## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

★

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ Անիէռ Գուա Քոլոմպի վարչութիւնը վերամուտի առթիւ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամներն ու անդամուհիները, Չորեքշաբթի 6 Հոկտ. երեկոյեան ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղ ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամուհիները այս երկուշաբթի ժամը 4ին, Քաֆէ Ռէժանի վերնայարկը։ Օրակարգ. — Գարահանդէս եւ զանազան հարցեր։

Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

ՄԵՌԵԼՈՑԻ (Ամենայն Սրբոց) տօնին առթիւ, Յառաջի յաջորդ թիւը լոյս կը տեսնէ Չորեքշաբթի օր։

կան աջակցութեամբ։ Այսպէս, 130 միլիառ ֆրանք պիտի տրամադրուի աժան բնակարաններու շինութեան, յետոյ ինը միլիառ ֆրանք նպաստ՝ անհատական շինութեանց համար ։

2. Կարգ մը գեղջեր պիտի կատարուին միջին պատակարգի անհատական եկամուտին վրայ, կարգ մը պարագաներու մէջ ալ առեւտրական եւ ճարտարարուեստական շահերու վրայ ։

3. Երեք ամիսը անգամ մը երկու քիլօ ձրի շաքար պիտի բաժնուի «տնտեսապէս տկար» դասակարգի քաղաքացիներու ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵԹՈՎՊԻՈՅ ԿԱՅՍՐԸ, Հայլէ Սելասիէ, կը շարունակէ այցելել Փարիզի պատմական վայրերը։ Առջի օր Վերսայլ գնաց, գիշերը՝ Օփերա։ Այցելեց նաեւ Ռընոյի գործարանները։ Երէկ իրեն ի պատիւ ընդունելութիւն մը սարքուած էր Փարիզի քաղաքապետարանին մէջ։ Հրաւիրուած էր նաեւ Հայոց առաջնորդը, եկեղեցւոյ հոգաբարձութեան հետ։ Արքայից արքան իր կարգին ճաշի հրաւիրեց Ֆրանսայի Հանրապետութեան նախագահը եւ Տիկինը, Փարիզի եթովպական դեսպանատան մէջ ։

ԹԵՀՐԱՆԻ վերաքննիչ ատեանը մերժեց ջնջել նախկին նախարար Հուսէյն Ֆաթեմիի մահապատիժը։ Միւս կողմէ հաստատեց նախկին վարչապետ Մոսատեղի պատիժը — ցկեանս թիապարտութիւն ։ Երէկ 12 սպաներ եւս պիտի դնդակահարուէին ։

ԱՆԳԼԻՈՅ նաւահանգիստներուն դործադուլը պիտի վերջանայ երկուշաբթի օր, համաձայն վերջին լուրերու։

ԸՆՏՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ կը սաստկանայ Մ. Նահանգներուն մէջ։ Նախագահ Այզընհաուըր անձամբ կը շրջի գլխաւոր քաղաքները ։

ԻՐԱՆԻ ՇԱՀԻՆ եղբայրը, իշխան Ալի Ռըզա, օդանաւով Թեհրան մեկնած էր քանի մը օր առաջ։ Ցարդ լուր առնուած չըլլալով, մտահոգութիւն կը տիրէ արքունիքին մէջ ։

ՌՈՒՄԱՆԻՈՅ համայնավար կուսակցութեան համագումարը նորէն յետաձգուեցաւ, իբրեւ հետեւանք հողագործական տագնապին որ հետզհետէ կը սաստկանայ ։

ՍԱՐԻ մասին տրուած որոշման դէմ կը բողոքեն արեւմտեան Գերմանիոյ աղատականները, վերաքննութիւն պահանջելով։ Կ'ըսուի թէ Տոքթ. Ատընաուըր մեծ դժուարութեանց պիտի հանդիպի Ամերիկայէն վերադարձած ատեն։

ԵՐԿՈՒ ԿԱՌԱԽՈՒՄԲԵՐ ընդհարեցան Սէն Լազարի գծին վրայ, Փոն Քարտինէի մօտ, շաբաթ առտու ժամը 9·45ին։ Կ'ըսուի թէ վաթսուն հոգի վիրաւորուած են։

### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Յ. Կ. Խաչի Մարսէյլի վարչութիւնը կը յայտարարէ թէ հայերէնի դասերը սկսած են արդէն, բոլորովին ձրի, (հայերէն եւ Հայոց պատմութիւն), կարող եւ փորձառու ուսուցչուհի Տիկին Հազարեանի կողմէ։ Սրահին տաքութիւնը ապահովուած է։ Կը խնդրենք ծնողքներէն աճապարել իրենց զաւակները արձանագրել հինգշաբթի օրերը ժամը 9էն 12 Ռիւ տէ Քոնվալեսան, 26 թիւ ։



## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ԼԻՈՆ — Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս հինգշաբթի ժամը 20·30ին, Յօյներու սրահը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է ։

## ՓԱՐԻԶԻ Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ - ՄԿՐՏԻՉ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՕԾՄԱՆ ՅԻՍՆԱՄԵԱԿԸ

Կիրակի, 31 Հոկտ. Փարիզի Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԿՐՏԻՉ եկեղեցւոյ Օծման 50րդ տարեդարձին առթիւ պիտի մատուցուի քառաձայն հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի եկեղեցաշէն եւ մեծ բարերար ողբացեալ ԱԼԵՔՍԱՆՏՐ ՄԱՆԹԱՇԵԱՆի եւ ՄԱՆԹԱՇԵԱՆ գերդաստանի համօրէն ննջեցեալներու յիշատակին։

Կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ եւ Փարիզի առաջնորդ ՍԵՐՈՎԲԷ Ծ. Վ. ՄԱՆՈՒԿԵԱՆ ։

Այս առթիւ կոչ կ'ուղղենք բոլոր Հայերուն, որպէսզի խուռներամ փութան եկեղեցի, իրենց երկիւղած յարգանքը արտայայտելու համար մեծ բարերարի անմահ յիշատակին ։

(Դիւան հոգաբարձութեան)





# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Այս շաբաթ, ժամը 20·30ին, Պետական թատրոնին մէջ, Փլաս տը լա Մէրի։

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ի ։

Բարձր հովանաւորութեամբ՝ Տրոմի ծերակուտական PICի

Կը նախագահէ ընկեր Յ. ԿՕՇԿԱԿԱՐԵԱՆ

Կը խօսի ընկեր Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Խօսք կ'առնեն Պուր լէ Վալանսի քաղաքապետ՝ ընկեր ՎԱՇԷ

Տիկին ՕՏԷԹ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ եւ ընկերվարական ներկայացուցիչը ։

Գեղարուեստական բաժին — Երգ, արտասանութիւն, բարձրախօս հայկական երգապնակներով ։

Ռոմանի թատերախումբը պիտի ներկայացնէ յեղափոխական կեանքէ առնուած պատկեր մը՝

«ԱՆԴՐԱՆԻԿ»ը

Ղեկավարութեամբ Պ. Սարգիս Քէփէնէկեանի ։

Ճոխ պիւֆէ — Մուտքը ազատ է

●

### ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ ՄԷՋ

28 Նոյեմբեր, Շաբաթ ։

Կը խօսի ընկեր. ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

### ԻՍԻԻ ՄԷՋ

Նոյեմբեր 28ին, Իսիի քաղաքապետարանին սրահներուն մէջ ։

### ՌՈՄԱՆԻ ՄԷՋ

7 Նոյեմբեր, Կիրակի ։

Կը խօսի ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «ՎԱՐՈՒԺԱՆ» կոմիտէի, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին ։

Կիրակի Նոյ. 7ին, ժամը 20·30էն մինչեւ առաւօտեան երեքը «Օթէլ տը Ֆրանս»ի մէջ (Նախկին ճերմակ սըրճարան)։

Կը նախագահէ ընկ. Ա. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

Կը խօսի ընկ. ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Գեղարուեստական ճոխ բաժին, միրայօժար մասնակցութեամբ Օր. Սաթենիկ Տէմիրճեանի (Լիոնի երաժշտանոցէն), Պ. Մ. Միքայէլեանի երգ, արտասանութիւն ։

Ճոխ պիւֆէ — Մուտքը ազատ է

●

### ԿՐԸՆՈԲԼԻ ՄԷՋ

Կը տօնուի Նոյեմբեր 7ին, Կիրակի կէս օրէն վերջ ժամը 15ին, Ռիւ ժէ, Սէն Լուի սրահը ։

Կը խօսի ընկեր Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

6 Նոյեմբեր, Շաբաթ ։

Կը խօսի ընկեր Յ. ՊԱՊԻԿԵԱՆ

### ՊՈՒՏՈՅԻ ՄԷՋ

7 Նոյեմբեր, Կիրակի ։

Կը նախագահէ ընկ. Ա. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

Կը խօսի ընկ. Պ. ՉՊՈՒՔՃԵԱՆ

Ճոխ գեղարուեստական բաժին, նուագ, արտասանութիւն, խմբերգ, մեներգ, եւն.

●

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՆՈՅ. 7ԻՆ



THÉ DANSANT

ԼԻՈՆ — Եկեղեցաշէն Տիկնանց Օժանդակ յանձնախումբը, հովանաւորութեամբ Ազգ. Միութեան, կը հրաւիրէ քաղաքի եւ շրջանի հայ հասարակութիւնը որ ներկայ ըլլայ 7 Նոյ. կիրակի ժամը 4էն մինչեւ կէս գիշեր, պարանցիկ թէյասեղանին, որ տեղի պիտի ունենայ Փերաշի եաեւը, Ֆուայէէ Փերաշ։ Անհել 8։ 26։ 12 եւ 4 թիւ հանրակառքը։

Մուտքը ազատ է ։

Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Յառաջիկայ երեկոյթը, այս չորեքշաբթի երեկոյ ժամը 9ին։ Կը դասախօսէ Պ. Գ. ՃԻՉՄԷՃԵԱՆ։ Նիւթ՝ «Աչ ձեռքը» ։ ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է ։



